Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒԼԻՍ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78


# ՄԱՐՏԱԿԱՆ, ՆՊԱՏԱԿԱՍԼԱՑ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԱՄԱՐ

Կոմունիստական պարտիայի՝ մարտերում կոփված իր ավանգարդի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը վստահորեն առաջ է ընթանում կոմունիզմի փառապանծ ուղիով:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, կենսագործելով 19-րդ համագումարի որոշումները, Ի. Վ. Ստալինի մահից հետո անցած ժամանակաշրջանում ապահովեց երկրի ամբողջ կյանքի անխափան ու ճիշտ ղեկավարությունը, մեծ աշխատանք կատարեց պարտիային և ժողովրդին կոմունիզմի կառուցման խնդիրների շուրջը համախմբելու, մեր Հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորությունն ամրապնդելու, մեր երկրի բոլոր աշխատավորների կյանքի հետագա բարելավման ուղղությամբ: Սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականության հետևողական իրագործումը հանգեցրեց ՍՍՌՄ միջազգային դրության հետագա





*ամրապնդմանը, մեր երկրի հեղինակության աճին, խաղաղության պահպանման և ամրապնդման համաշխարհային շարժման լայն վերելքին։*

*Իմպերիալիստական լագերում, ընդհակառակը, մենք տեսնում ենք կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա սրում, աշխատավորական լայն մասսաների ավելի ու ավելի ուժեղացող աղքատացում։*

*Մի կողմից դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի անշեղ աճը, մյուս կողմից՝ իմպերիալիստական լագերի ուժերի ընդհանուր թուլացումը, գրում է «Պրավդան»,— «խոր անհանգստություն է առաջացնում իմպերիալիստների մեջ և պայմանավորում է ռեակցիոն իմպերիալիստական ուժերի խիստ ակտիվացումը, նրանց տենդագին ձգտումը՝ խարխլել խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի միջազգային լագերի և ամենից առաջ, նրա առաջատար ուժի՝ Սովետական Միության աճող հզորությունը։ Իմպերիալիստները դեմոկրատիայի և սոցիալիզմի երկրներում իրենց համար հենարան են որոնում ի դեմս զանազան թափթփուկների և այլասերված տարրերի, ակտիվացնում են իրենց գործակալների քայքայիչ գործունեությունը»։*



*Այդ մասին է կրկին վկայում Բերիայի՝ բուրժուական այդ վերասերվածի և միջազգային իմպերիալիզմի գործակալի հակապարտիական, հակապետական հանցավոր, նողկալի գործունեությունը։*

*Մեր պարտիան, սովետական ամբողջ ժողովուրդը լիակատար միահամուռությամբ և ջերմ հավանությամբ ընդունեցին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ Լ. Պ. Բերիային, որպես պարտիայի և սովետական ժողովրդի թշնամու, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի անդամությունից վտարելու և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության որոշումը՝ Լ. Պ. Բերիայի հանցավոր գործողությունների վերաբերյալ գործը ՍՍՌՄ Գերագույն դատարանի քննարկմանը հանձնելու մասին։*

*Բերիայի գործից պետք է քաղաքական դասեր քաղվեն և համապատասխան հետևություններ արվեն։ Անհրաժեշտ է վճռականորեն բարելավել մասսաների մեջ կատարվող ագիտացիոն քաղաքական և դաստիարակչական աշխատանքը։*

*Այժմ, ինչպես երբեք, մեզ պետք է մարտական, նպատակասլաց քաղաքական ագիտացիա։ Ագիտատորները մշտապես պետք է մասսաներին ռեվոլյուցիոն զգոնության կոչ*

անեն և բացատրեն, որ քանի դեռ գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը նա մեր միջավայրն է ուղարկում և կուղարկի իր գործակալներին քայքայիչ գործունեության համար:

Ագիտատորները ուշի-ուշով պետք է պարզաբանեն պարտիայի քաղաքականությունը, որի նպատակն է ապահովել ժողովրդի արմատական շահերը և սոցիալիստական Հայրենիքի անվտանգությունը, ամրապնդել սոցիալիստական պետությունը, անշեղորեն բարձրացնել սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը, պահպանել և ամրապնդել խաղաղությունը ժողովուրդների միջև: Անհրաժեշտ է պարզաբանել աշխատավորներին, որ ՍՍՌՄ հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը ջերմորեն պաշտպանում է ամբողջ առաջավոր մարդկությունը, որ մեր երկիրը խաղաղության համար մղվող պայքարի դրոշակակիրն է:

Հոգատարությունը ժողովրդի բարօրության, նրա նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման մասին մեր պարտիայի և կառավարության համար օրենք է հանդիսանում: Ագիտատորները գործարանից, կոլտնտեսությունից վերցրած կոնկրետ



փաստերով և օրինակներով կարող են ցույց տալ այդ հոգատարության արդյունքները՝ աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ աճը մեր երկրում, ռեսպուբլիկայում, ամեն մի գյուղում և քաղաքում: Ագիտատորները, միաժամանակ, պետք է բացահայտեն բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման գործում եղած թերությունները:

Ամենօրյա ագիտացիոն աշխատանքը պետք է նպաստի աշխատավորների ուժերի մոբիլիզացմանը՝ հինգերորդ հնգամյա պլանի կատարման համար: Անհրաժեշտ է սիստեմատիկաբար մարդկանց տեղյակ պահել պլանների կատարման ընթացքի մասին տվյալ ֆաբրիկայում, գործարանում, կոլտնտեսությունում, սովխոզում:

Պետք է ամենուրեք լայնորեն ծավալել մարտական, կյանքի հետ սերտորեն կապված քաղաքական ագիտացիան:

Արդյունաբերության բնագավառում ագիտացիան նպատակ ունի պայքարել պլանները քանակական և որակական բարձր ցուցանիշներով կատարելու, արտադրանքի ինքնարժեքը սիստեմատիկաբար իջեցնելու համար:

Գյուղատնտեսության բնագավառում ագի-

տատորների խնդիրն է՝ պայքարել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացման, հանրային անասունների գլխաքանակի ավելացման և մթերատվության բարձրացման համար։

Ֆաբրիկաներում և գործարաններում պետք է նպաստել սոցիալիստական մրցության ծավալմանը, տարածել առաջավորների աշխատանքի փորձը։ Ագիտացիոն աշխատանքը պետք է նպաստի արդյունաբերության և գյուղատնտեսության նոր ռեզերվների հայտնաբերմանն ու օգտագործմանը։ Երևանի Կիրովի անվան գործարանի ագիտատորներն իրենց ամենօրյա զրույցների ընթացքում բանվորներին կոչ են անում լրիվ օգտագործել արտադրության ռեզերվները, պայքարել հումքի, էլեկտրաէներգիայի խնայողության համար։ Եվ եթե գործարանը խոշոր նվաճումներ է ձեռք բերել այդ ուղղությամբ, ապա դրա մեջ իրենց բաժինն ունեն նաև ագիտատորները։

Մասսաների մեջ տարվող ագիտացիոն աշխատանքը պետք է նպաստի սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության դաստիարակմանը։ Կոնկրետ փաստերով պետք է ցույց տալ սովետական մարդկանց անհուն սերը դեպի հարազատ



Սովետական Հայրենիքը, նրա բարօրության համար ոչինչ չխնայելու նրանց կամքն ու պատրաստակամությունը։

Պարտիայի և ժողովրդի թշնամի Բերիան ձգտում էր քայքայել մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը, երկպառակություն սերմանել ՍՍՌՄ ժողովուրդների միջև, ակտիվացնել բուրժուա-նացիոնալիստական տարրերը միութենական ռեսպուբլիկաներում։ Նրա նողկալի մտադրությունները մերկացված են։ Պետք է բացատրել, որ ժողովուրդների բարեկամությունը մեր սոցիալիստական բազմազգ պետության հիմքերի հիմքն է և եղբայրական սոցիալիստական ռեսպուբլիկաների բոլոր հաջողությունների գլխավոր պայմանը, որ պարտիայի Լենինյան—Ստալինյան ազգային ճիշտ քաղաքականությունը ապահովեց մեր երկրի բոլոր ժողովուրդների տնտեսական և կուլտուրական վերելքը. քանի կա և ապրում է ժողովուրդների բարեկամությունը ոչ մի թշնամի սարսափելի չէ մեզ համար։

Պարտիական պրոպագանդայի և ագիտացիայի խնդիրն է՝ նպաստել ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության է՛լ ավելի ամրապնդմանը, սովետական մարդկանց պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով

դաստիարակելուն, վճռական ու անհաշտ պայքար մղել բուրժուական նացիոնալիզմի բոլոր և ամեն տեսակ դրսևորումների դեմ։

Քաղաքական ագիտացիան պետք է ուղղըված լինի սովետական մարդկանց կուլտուրական մակարդակի բարձրացմանը, նրանց գիտակցության միջից կապիտալիզմի մնացուկների լիկվիդացմանը․ անհրաժեշտ է մարդկանց մեջ դաստիարակել կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը, դեպի հանրային սեփականությունը, նրանց մեջ զարգացնել պատասխանատվության զգացմունքը պետության հանդեպ, է՛լ ավելի սերտորեն համախմբել մասսաներին պարտիայի, սովետական կառավարության շուրջը։

Ամենօրյա զրույցների և զեկուցումների ընթացքում պետք է ցույց տալ պարտիայի՝ սովետական ժողովրդի ղեկավար և ուղղություն տվող ուժը։

Պարտիայի ղեկավարությամբ մեր երկիրը ձեռք է բերել պատմական հաղթանակներ, ներկայումս հաջողությամբ իրագործում է կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները և հաստատ ու վստահ շարունակում է իր առաջընթացը դեպի կոմունիզմ։

Ագիտացիոն աշխատանքի հաջողությունը



պարտիական ղեկավարության մեջ է։ Այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպությունները լավ են ղեկավարում ագիտկոլեկտիվներին և ագիտատորներին, այնտեղ հաջողությամբ է կազմակերպված քաղաքական-դաստիարակչական աշխատանքը բնակչության մեջ։

Պարտիական կազմակերպությունները պետք է սիստեմատիկաբար քննության առնեն ագիտացիոն աշխատանքի հարցերը, հրավիրեն ագիտատորների խորհրդակցություններ, սեմինար պարապմունքներ, ժամանակին և լավ հրահանգավորեն նրանց։

Քաղաքական ագիտացիայի ուժը նրա բարձր իդեականության մեջ է։ Առանց պարզ, մտածված իդեական բովանդակության,— ասում է Ի. Վ. Ստալինը,— ագիտացիան վերասերվում է դատարկախոսության։

Պարտիական կազմակերպությունները պետք է ապահովեն կոնկրետ ղեկավարություն ագիտատորների և ագիտկոլեկտիվների նկատմամբ, ապահովեն ամենօրյա մարտական, բովանդակալից նպատակասլաց քաղաքական ագիտացիան բնակչության շրջանում։

## ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԱԳԻՏԱՑԻՈՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՇՐՋԱՆՈՒՄ

*Ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում արդեն սկսվել է հացահատիկային կուլտուրաների հունձը։ Շուտով կսկսվի մասսայական բերքահավաքը ամբողջ ռեսպուբլիկայում։*

*Այս օրերին սոցիալիստական գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առաջ խնդիր է դրված՝ սեղմ ժամկետում և առանց կորուստների հավաքել 1953 թվականի բերքը։*

*Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ռեսպուբլիկայի ավելի քան 15 հազար գյուղական ագիտատորներ իրենց քաղաքական-մասսայական աշխատանքն ի սպաս են դնում բերքահավաքի հաջող անցկացումն ապահովելու գործին։*

*Կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների, ագիտկոլեկտիվների և ագիտատորների խնդիրն է հմտորեն օգտագործել քաղաքական ագիտացիայի բոլոր ձևերը և ագիտացիոն-բացատրական աշխատանքի*



*միջոցով բարձրացնել սոցիալիստական գյուղի աշխատավորների ակտիվությունը, մոբիլիզացնել կոլտնտեսականներին, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատավորներին՝ կազմակերպված և սեղմ ժամկետում անցկացնելու բերքահավաքը։*

*Քաղաքական ագիտացիայի ուժը նրա բարձր գաղափարայնության, նպատակասլացության, կյանքի հետ ունեցած սերտ կապի մեջ է։ Ագիտացիան կարող է աշխատավորական մասսաների մոբիլիզացման գործնական միջոց հանդիսանալ այն դեպքում, երբ նա սերտորեն կապվում է կոնկրետ խնդիրների հետ։*

*Բերքահավաքի շրջանում գյուղական ագիտատորների խնդիրն է՝ է՛լ ավելի լայնորեն ծավալել ագիտացիոն-բացատրական աշխատանքը աշխատավորների մեջ, այն դարձնել ավելի բովանդակալից, հետաքրքրական ու նպատակասլաց, ամեն կերպ մարտական ոգի հաղորդելով այդ աշխատանքին։ Ագիտատորներն իրենց զրույցներն այնպես պետք է կազմակերպեն, որպեսզի դրանք լինեն կոնկրետ և սերտորեն կապված իրենց կոլտնտեսության, ՄՏԿ-ի և սովխոզի առաջնակարգ տնտեսական խնդիրների հետ։*

*Այդ տեսակետից ագիտացիոն-մասսայա-*

կան աշխատանքի ուսանելի փորձ ունի Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվը։ Գյուղատնտեսական աշխատանքների սկսման պահից աշխատավորության մեջ տարվող ագիտացիան փոխադրվեց դաշտ, այնտեղ, որտեղ լուծվում է կոլտնտեսային արտադրության խնդիրը։

Աշխատավորների մեջ ագիտատորների կատարած քաղաքական աշխատանքի շնորհիվ՝ խոշոր չափով բարձրացել է կոլտնտեսականների քաղաքական գիտակցությունը և աշխատանքային ակտիվությունը։

Բերքահավաքը օրինակելիորեն նախապատրաստելու և կազմակերպված անցկացնելու համար մղվող պայքարի առաջին շարքերում են ընթանում կոլտնտեսային պարտիական կազմակերպության ագիտատորները։

Նրանք արդեն մի շարք զրույցներ են անցկացրել կոլտնտեսականների հետ՝ նվիրված բերքահավաքի կամպանիայի հարցերին և օգնում են կոլտնտեսականներին նոր պարտավորություններ ստանձնելու գործում։

Բովանդակալից և հետաքրքիր ագիտացիոն զրույցներ է անցկացնում 7-րդ բրի-



գադայի երկրորդ օղակի ագիտատոր Լուսյա Քյանդոյանը։ Նա ժամանակին պլանավորում է գյուղատնտեսական աշխատանքի առանձին շրջաններում կազմակերպվելիք ագիտացիոն զրույցները և դրանք բարեխղճորեն կատարում։ Այսպես, բերքահավաքին նախապատրաստվելու շրջանում նա նախօրոք պլանավորված թեմաների շուրջ զրույցներ անցկացրեց։ Վերջերս տեղի ունեցած իր հերթական զրույցներից մեկի ժամանակ ընկ. Քյանդոյանը ունկնդիրներին պատմեց, թե որքան կարևոր է բերքահավաքը ժամանակին կատարելը և հիշեցրեց Ի. Վ. Ստալինի ցուցումը այն մասին, որ բերքահավաքը սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում։ Եթե բերքը ժամանակին հավաքեցիր՝ կշահես, ուշացրիր՝ տանուլ կտաս։ Այնուհետև նա խոսեց այն քաղաքական նշանակության մասին, որ ունի պետական պարտավորությունների ժամանակին կատարումը կոլտնտեսության կողմից։ Ունկնդիրներին պատմեց, որ սոցիալիստական գյուղի յուրաքանչյուր աշխատավորի ազնիվ պարտքն է հոգալ պետության շահերի մասին, որ մեր երկրի կոլտնտեսությունների կողմից պետական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելը ամրապնդում է

սոցիալիստական Հայրենիքի հզորությունը և ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման գործը։ Զրույցի ընթացքում ագիտատորը պատմեց աշխատանքային խանդավառության մասին, որով համակված են Հայաստանի մյուս շրջանների և եղբայրական ռեսպուբլիկաների սոցիալիստական գյուղի աշխատավորները բերքահավաքի օրերին։

Սոցիալիստական դաշտերի առատ բերքը սեղմ ժամկետում և անկորուստ հավաքելու գործում վճռական դեր է պատկանում ՄՏ կայանների մեխանիզատորներին։

Մեխանիզատորների շրջանում ագիտատորների կատարած աշխատանքը ուղղված պետք է լինի այն բանին, որպեսզի օրավուր բարելավվի տեխնիկայի օգտագործումը, բարձրացվի յուրաքանչյուր մեքենայի արտադրողականությունը, բոլոր մեխանիզատորները կատարեն ու գերակատարեն օրվա գրաֆիկով սահմանված նորմաները։ Անհրաժեշտ է ագիտացիոն զրույցների միջոցով պրոպագանդել ու արմատավորել առաջավոր մեխանիզատորների աշխատանքի փորձը։

Վ. Ի. Լենինը նշել է, որ տնտեսական ընդհանուր վերելքի համար անհրաժեշտ է, որպեսզի արտադրության կազմակերպման



նոր փորձը դառնա մասսաների սեփականությունը։ Այստեղից՝ ագիտատորների պարտքն է՝ հմտորեն տարածել արտադրության առաջավորների փորձը, աշխատավորներին պատմել այն մարդկանց մասին, որոնք այսօր աչքի են ընկնում իրենց աշխատանքով, մասսայականացնել նրանց աշխատանքի մեթոդները։ Դրա համար անհրաժեշտ է կազմակերպել իր բրիգադայի, կոլտնտեսության, սովխոզի առանձին առաջավորների ելույթները, ընդհանրացնել և արմատավորել Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների, բարձր բերքի վարպետների փորձը։

Ագիտատորները պետք է հիշեն, որ ագիտացիոն աշխատանքի հաջողության անհրաժեշտ պայմանը նրա նպատակասլաց, կոնկրետ լինելն է։ Ագիտացիան չի կարող սահմանափակվել միայն այս կամ այն հարցի պարզաբանումով, նրա խնդիրն է օգնել ետ մնացողներին՝ հասնելու առաջավորներին։ Դրա համար անհրաժեշտ է, որ ագիտատորներն իրենց զրույցների ժամանակ խոսեն նաև արտադրական պլանները թերակատարողների և նրանց ետ մնալու պատճառների մասին։

Հենց այդպես էլ վարվեց Արտաշատի շրջ.

ջանի Գետաշեն գյուղի Ի. Վ. Ստալինի անվան կոլտնտեսության դաշտավարական իններորդ բրիգադայի ագիտատոր ընկ. Թ. Սարգսյանը, երբ բրիգադայի անդամներ Վ. Բաղդասարյանը և Ա. Վարդանյանը որոշ ժամանակ թերակատարում էին արտադրական նորմաները։ Ագիտատորը մանրամասնորեն ուսումնասիրեց նրանց ետ մնալու պատճառները։ Պարզվեց, որ Բաղդասարյանը և Վարդանյանը ռացիոնալ ձևով չէին օգտագործում աշխատանքային օրը և մասամբ էլ անբարեխիղճ վերաբերմունք էին հանդես բերում առաջադրանքների կատարման գործում։ Դա առիթ տվեց ագիտատորին հատուկ զրույց կազմակերպելու «Է՛լ ավելի բարձրացնել յուրաքանչյուր կոլտնտեսականի աշխատանքի արտադրողականությունը» թեմայով։ Զրույցի ընթացքում նա օրինակներ բերեց իր բրիգադայի առաջավորներ Դ. Ասոյանի և Ա. Հունանյանի փորձից, որոնք օրվա նորմաները կատարում են 150—200 տոկոսով։ Համեմատելով սրանց և Բաղդասարյանի ու Վարդանյանի աշխատանքը, ագիտատորը նշեց, որ այդ ընկերներն էլ կարող են լավ արդյունքների հասնել, եթե ուշադիր կերպով հետևեն առաջավորներին և սովորեն նրանցից։ Ագիտատորի այդ դիտողու-



թյանը ջերմորեն հավանություն տվին բրիգադայի մյուս անդամները։ Բայց ագիտատորը չսահմանափակվեց դրանով։ Հաջորդ երկու պարապմունքներին նա կազմակերպեց արտադրության առաջավորների, նախ Ասոյանի և ապա Հունանյանի ելույթները բրիգադայի առաջ, որոնք պատմեցին իրենց աշխատանքի փորձի մասին։ Դրանից անցավ ընդամենը մի քանի օր և բրիգադայում այլևս չկային ետ մնացողներ։ Այսպես ագիտատորը հասավ իր բրիգադայի յուրաքանչյուր կոլտնտեսականի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Բերքահավաքի օրերին ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնը պետք է կազմի Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի որոշումների, մեր պարտիայի և Սովետական Կառավարության ներքին ու արտաքին քաղաքականության անդուլ պարզաբանումը աշխատավորներին։ Մեր ագիտատորները պետք է համոզեն կոլտնտեսականներին, ՄՏԿ-ների և սովխոզների աշխատողներին, որ բերքահավաքի կամպանիայի հաջող ավարտումը կնպաստի այդ իմաստուն քաղաքականության կենսագործմանը։

Ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերը և





միջոցները՝ զրույցները, կինոնկարների դիտումների կազմակերպումը, ցուցադրական ագիտացիան, բարձրաձայն ընթերցանությունը, լիստովկաների և կայծակ թերթիկների լույս ընծայումը և այլն, այս օրերին պետք է ի սպաս դրվեն առաջնակարգ տնտեսական խնդիրների կատարմանը:

Ագիտատորների գլխավոր խնդիրն է՝ քաղաքական հարցերի պարզաբանման ժամանակ քաղաքական աշխատանքը ճիշտ զուգակցել կոլտնտեսության, ՄՏ կայանի, սովխոզի, բրիգադայի առջև կանգնած տնտեսական խնդիրների հետ: Ագիտացիոն զրույցներն այնպես պետք է կազմակերպել, որ դրանք նպաստեն սոցիալիստական մրցության հետագա վերելքին, մոբիլիզացնեն սոցիալիստական գյուղի աշխատավորներին աշխատանքային նորանոր սխրագործություններ կատարելու, բերքահավաքը հաջող ավարտելու, պետական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար:

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի ագիտացիայի սեկտորի վարիչ

---

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

---

# ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը սովետական ժողովրդի սիրելի ու տրադիցիոն տոներից է, որը հատուկ որոշմամբ սահմանել է Սովետական կառավարությունը 1939 թվականին:

Սովետական կառավարության որոշումը Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը սահմանելու մասին վառ արտահայտությունն է այն հսկայական հոգատարության և ուշադրության, որն ամեն օր ցուցաբերում են մեր պարտիան ու կառավարությունը սովետական երիտասարդության ֆիզիկական և հոգևոր զարգացման նկատմամբ: Կոմունիստական պարտիան միշտ էլ ֆիզիկական կուլտուրան դիտել է որպես աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց առողջության պահպանման ու ամրապնդման, աշխատանքի և սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության համար

նրանց պատրաստության կարևոր միջոցներից մեկը։

Մեր երկրում ֆիզկուլտուրան և սպորտը կրում են իսկական համաժողովրդական բնույթ։ Միլիոնավոր աշխատավորներ Սովետական Միությունում զբաղվում են ֆիզկուլտուրայով և սպորտով։ Պարտիան և Կառավարությունը ստեղծել են բոլոր անհրաժեշտ պայմանները ֆիզկուլտուրան ու սպորտը ժողովրդական ամենալայն մասսաների սեփականությունը դարձնելու համար։

Սովետական իշխանության տարիներին կառուցվել են հազարավոր ստադիոններ, սպորտային հրապարակներ ու դահլիճներ, ջրային ու դահուկային կայաններ։ Սովետական Միությունում այժմ դժվար է գտնել մի բնակավայր, որտեղ չլինի սպորտային հրապարակ։

Սովետական երիտասարդության ֆիզիկական դաստիարակության նկատմամբ պարտիայի և կառավարության հոգատարության մասին է խոսում այն փաստը, որ ՍՍՌՄ-ում կա ֆիզիկական կուլտուրայի 15 բարձրագույն ուսումնական հաստատություն, 40 տեխնիկում, ֆիզկուլտ կադրերի պատրաստման 150 ուսումնական այլ հաստատություններ։ Ֆիզիկական կուլտուրայի հարցերի գի-



տական մշակման համար ստեղծված են 3 գիտահետազոտական ինստիտուտ։ Մանկավարժական գիտությունների ակադեմիայի սիստեմում գործում է ֆիզիկական դաստիարակության ինստիտուտը։ Ֆիզիկական կուլտուրան դասավանդվում է բոլոր դպրոցներում, տեխնիկումներում, բուհերում։

Սովետական Միությունում աճել է սովետական ժողովրդի հպարտությունը կազմող բազմամիլիոն ֆիզկուլտուրնիկների մի ամբողջ բանակ։

1948 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ-ում ֆիզկուլտուրնիկների և ֆիզկուլտ կոլեկտիվների թիվն ավելացել է ավելի քան երկու անգամ։ Միայն 1950 թվականին ստեղծվեցին ֆիզկուլտուրայի 22 հազար կոլեկտիվ։ Ավելի ու ավելի են խտացվում ՊԱՊ-ի կրծքանշանակիրների շարքերը։ Սպորտային խոշոր իրադարձություն հանդիսացավ «Կոլտնտեսական» կամավոր սպորտ ընկերության ստեղծումը, որն այժմ իր շարքերում միավորում է հարյուր հազարավոր գյուղական երիտասարդների։ 1951 թվականին կայացած թեթև ատլետիկայի հեռակա համամիութենական մրցումներին մասնակցեցին մոտ կես միլիոն գյուղական սպորտսմեններ։

Իրենց սպորտային վարպետության բարձրացման ասպարեզում նոր նվաճում ձեռք

բերեցին հազարավոր ֆիզկուլտուրնիկներ ու սպորտսմեններ։ Եթե 1948 թվականին սահմանվել էր 202 համամիութենական ռեկորդ, ապա 1951 թվականին սահմանվեց 523, իսկ 1952 թվականի առաջին հինգ ամիսների ընթացքում 124 ռեկորդ։ Համամիութենական 69 ռեկորդների ցուցանիշները գերազանցում են համապատասխան համաշխարհային ռեկորդներին։

Սովետական շախմատիստները, ըմբիշները, չմշկավարները, մարմնամարզիկները, ծանր ատլետները, վոլեյբոլիստները, հրաձիգները նվաճել են համաշխարհային առաջնություն։

Ամբողջ սովետական ժողովրդին հայտնի են սպորտսմեններ Բոտվիննիկի, Ռուդենկոյի, Գոնչարենկոյի, Շչեգոլևայի, Մուրատովի, Շահինյանի, Ռոմաշկովայի, Սաֆինի, Տերյանի, Լոմակինի, Չմշկյանի, Չուդինայի, Կալանցևի, Սուխարևի և շատ ուրիշների անունները։

Խոշոր նվաճումներ ձեռք բերեցին սովետական սպորտսմենները 1952 թվականի ամռանը Հելսինկիում կայացած միջազգային 15-րդ օլիմպիական խաղերի ժամանակ, որին մասնակցում էին ավելի քան 70 երկրների սպորտսմեններ։



Բավական է նշել, որ սովետական սպորտսմենները նվաճեցին 106 ոսկե, արծաթե և բրոնզե մեդալներ։ 1953 թվականը սովետական սպորտսմեններին բերեց նոր ու մեծ հաղթանակներ։ Հելսինկիում տեղի ունեցավ աշխարհի ուժեղագույն չմշկավարների առաջնության չեմպիոնատը, որտեղ փայլուն հաղթանակ տարան Սովետական Միության ներկայացուցիչներ Օլեգ Գոնչարենկոն և Բորիս Շիլկովը՝ նվաճելով առաջին և երկրորդ տեղերը։ Կանանց մեջ չմշկավազքի գծով աշխարհի 1953 թվականի չեմպիոնի կոչումը նվաճեց 19-ամյա սովետական ըսպորտսմենուհի Խալիդա Շչեգոլեևան։ Այս տարվա ապրիլին մեծագույն հաղթանակ ձեռք բերեցին սովետական ըմբշամարտիկները։ Նրանք Նեապոլում տեղի ունեցած կլասիկ ըմբշամարտի գծով աշխարհի առաջնության մրցումներում նվաճեցին 3 ոսկե, 1 արծաթե, 1 բրոնզե մեդալներ։ Սովետական սպորտսմեններ՝ Գուրևիչը, Տերյանը, Շատվորյանը, Կարտոզիան և Էնգլասը նվաճեցին աշխարհի չեմպիոնի կոչումը։ Երրորդ անգամ բասկետբոլի գծով Եվրոպայի չեմպիոնի կոչումը նվաճեցին սովետական բասկետբոլիստները։ Բասկետբոլի գծով Եվրոպայի չեմպիոնի կոչումը իրենց ձեռքում են պա-

*հում նաև սովետական բասկետբոլիստուհիները:*

*Շնորհիվ լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության, սովետական սոցիալիստական ռեսպուբլիկաների եղբայրական ընտանիքում ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի աննախընթաց վերելքի հետ միասին, հսկայական չափով զարգանում է ֆիզկուլտուրան և սպորտը Սովետական Հայաստանում: Եթե 1948 թվականին ռեսպուբլիկայում ֆիզկուլտ կոլեկտիվների թիվը հասնում էր 780-ի, որտեղ ընդգրկված էին մոտ 40 հազար հոգի, ապա այժմ մենք ունենք 2230 ֆիզկուլտ կոլեկտիվ՝ 158 հազար ֆիզկուլտուրնիկով: Մեծ չափով աճել է ռեսպուբլիկայի ֆիզկուլտուրնիկների սպորտային վարպետությունը, որի մասին են վկայում հետևյալ փաստերը: Եթե 1948 թվականին ռեսպուբլիկայում կար սպորտի 17 վարպետ, ապա այժմ նրանց թիվը հասնում է 56-ի: 1948 թվականին սահմանվել է 41 ռեսպուբլիկական ռեկորդ, 1949 թվականին՝ 51, 1951 թվականին՝ 127, 1952 թվականին՝ 132 ռեսպուբլիկական ռեկորդ:*



***

*Միանգամայն այլ է պատկերը կապիտալիստական երկրներում, որտեղ սպորտը ենթակա է իմպերիալիստական գայլերի շահերին և կրում է հակաժողովրդական բնույթ: Իմպերիալիստները սպորտը օգտագործում են շահույթի, շահագործման, աշխատավորների դասակարգային գիտակցության բթացման համար: Ամերիկայում և կապիտալիստական մյուս երկրներում իմպերիալիստները միլիտարիզացիայի ենթարկելով սպորտը, ձգտում են այն օգտագործել նոր համաշխարհային պատերազմ սանձազերծելու համար:*

*Անգլիական հոգեբան պրոֆեսոր Դիկֆորդը խորհուրդ է տալիս պարապել սպորտով, որովհետև յուրաքանչյուր սպորտային խաղ հիշեցնում է պատերազմ, ագրեսիա, նվաճում և կործանում: Ամերիկյան պրոֆեսոր Ալեքսանդրը պրոպագանդայի է ենթարկում սպորտը որպես երիտասարդության դաժանության և մարդասպանության ոգով դաստիարակելու միջոցի:*

*Միջազգային սպորտային կազմակերպություններում սովետական սպորտսմենները պայքարում են իսկական սպորտի համար,*

ժողովուրդների միջև միջազգային կապերի և համագործակցության ամրապնդման համար։



Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը ֆիզկուլտուրայի և սպորտի աշխատանքների վիճակի ստուգատեսի օրն է։ Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը՝ մեր երկրի աշխատավորները, նշելով ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման գործում ձեռք բերած նվաճումներն ու հաջողությունները, իրենց ուշադրությունը կենտրոնացնում են ֆիզկուլտուրան և սպորտը ավելի մասսայական դարձնելու վրա, որպեսզի աշխատավորների ամենալայն մասսաները զբաղվեն ֆիզկուլտուրայով և սպորտով։

Սովետական Միությունում ստեղծված են լայն հնարավորություններ մեր աշխատավորության հոգևոր և ֆիզիկական զարգացման համար։ Յուրաքանչյուր ֆիզկուլտ ընկերության, կոլեկտիվի և սպորտսմենի խնդիրն է հասնել ֆիզկուլտուրայի և սպորտի նոր վերելքի և սպորտի բոլոր ձևերից նվաճել համաշխարհային առաջնություն։

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ
ՀԼԿԵՄ Երքաղկոմի քարտուղար



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԸ ԻՋԵՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը կարևորագույն նշանակություն տվեց արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և խնդիր դրեց արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքն իջեցնել մոտավորապես 25 տոկոսով, ձեռնարկությունների եկամտաբերությունը բարձրացնելու նպատակով անշեղորեն կիրառել խնայողության ռեժիմը։ Համագումարը տնտեսավարներից պահանջեց փնտրել, գտնել և օգտագործել արտադրության ընդերքում թաքնված ռեզերվները, առավելագույն չափով օգտագործել եղած արտադրական կարողությունները, սիստեմատիկաբար բարելավել արտադրության մեթոդները։

Պարտիայի այդ կարևորագույն առաջադրանքները պատվով է կատարում Երևանի Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը։ Գործարանում խելացի ու մտածված աշխատանք է կատարվում արտադրանքի ինքնարժեքն ի-

*չեցնելու համար։ Այս տարվա հինգ ամսում թողարկվող արտադրանքի ինքնարժեքը պլանով նախատեսված 1,9 տոկոսի փոխարեն իջել է 3,6 տոկոսով, այդ նույն ժամանակաշրջանում, 1952 թվականի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 30 տոկոսով։*

*Ձեռք բերված այդ հաջողությունների գործում նշանակալից աշխատանք են կատարել գործարանի ագիտատորները, որոնք պարբերաբար մասսայականացնում են արտադրության առաջավորների փորձը և նրապաստում առաջավոր փորձի արմատավորմանը արտադրության մեջ։ Այսպես, օրինակ, նախապատրաստական ցեխի ագիտատոր, տեխնիկ Ա. Հարությունյանը ագիտացիոն քաղաքական աշխատանքի ընթացքում հատուկ ուշադրություն է դարձնում ինքնարժեքի իջեցման հարցերի վրա։ Նա բանվորներին հանգամանորեն բացատրում է, թե ինչ միջոցներով կարելի է տնտեսել հումքը, խնայել էլեկտրաէներգիան, բարձրացնել արտադրանքի որակը և այդ ճանապարհով հասնել ինքնարժեքի սիստեմատիկ իջեցման։ Վերջերս նա նախապատրաստական ցեխի բանվորների հետ զրույց ունեցավ արտադրության պրոցեսում հումքի կորուստները մինիմումի հասցնելու մասին։*



*Արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար,— ասաց նա,— մենք լայն հնարավորություններ ունենք։ Հենց մեր գործարանի առաջավորների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ ռեզինի մեջ օգտագործվող փոշիացող նյութերի կորուստը, պլանով նախատեսված 3 տոկոսի փոխարեն, կարելի է կիսով չափ կրճատել։ Փորձով ապացուցված է, որ եթե տարաները, որոնցով ագրեգատին մոտ է տեղափոխվում փոշիացած քիմիական նյութը, լավ մաքրվեն, նյութի կշռումը կատարվի հատուկ կշռամանների միջոցով, այն պաշտպանվի կողմնակի կորուստներից, ապա ավտոդողեր պատրաստելու համար յուրաքանչյուր հերթափոխությունում մեծ քանակությամբ արժեքավոր քիմիական նյութեր կտնտեսվեն։*

*Ագիտատորը իր միտքը հաստատելու և զրույցը ավելի հետաքրքիր դարձնելու նպատակով բերեց սոցիալիստական մրցության առաջավորներ Վ. Գրիգորյանի և Ա. Ենոքյանի աշխատանքի դրական օրինակը, որոնք աչքի ընկնող հաջողությունների են հասել հումքի տնտեսման գործում։ Նրանք արտադրության պրոցեսում քիմիական նյութերի կորուստը պլանով նախատեսված 3 տոկոսից իջեցրել են մինչև 1,5 տոկոսի։*

Այնուհետև ագիտատորը ունկնդիրների ուշադրությունը բևեռեց էլեկտրաէներգիան խնայելու անհրաժեշտության վրա։

Մեզ մոտ,— ասաց նա,— հաճախ էլեկտրաէներգիայի անտեղի կորուստ է տեղի ունենում։ Այսպես, օրինակ, երբ մեր հերթափոխի բանվորները փոխարինում են մյուս հերթափոխի բանվորներին, ագրեգատների մոտ կուտակված չեն լինում անհրաժեշտ քանակությամբ հումք և օժանդակ նյութեր, և մինչև նոր հերթափոխը տեղափոխում է նյութերը, ագրեգատները մոտ 30 րոպե աշխատում են առանց արտադրանքի թողարկման, իսկ էլեկտրաէներգիան անտեղի ծախսվում է։ Կա՞ արդյոք հնարավորություն,— ունկնդիրներին հարցնում է ագիտատորը,— վերացնելու աշխատանքի նման սխալ պրակտիկան և կանխելու էլեկտրաէներգիայի անտեղի ծախսումը,— այո,— պատասխանում է իր հարցին ագիտատորը, —հանձնող հերթափոխը մինչև աշխատանքային օրվա վերջը պետք է մեքենաների մոտ կուտակի պահանջվող նյութերը՝ լրիվ կոմպլեկտով (քիմիկատներ), իսկ ընդունող հերթափոխը անմիջապես, առանց ժամանակ կորցնելու սկսի արտադրանքի թողարկումը։

Արմատավորելով ագիտատորի կողմից



մասսայականացված աշխատանքի առաջավոր մեթոդը, ցեխում վերացվեց էլեկտրաէներգիայի գերածախսը և, ընդհակառակը, բանվորները աշխատելով նոր մեթոդով, ավելացին էլեկտրաէներգիայի մեծ տնտեսում։ Կիսամյակում գործարանում տնտեսվել է 99 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Ագիտատոր Ա. Հարությունյանը տեսանելի աշխատանք է կատարում նաև առաջավոր փորձը մասսայականացնելու և այն արտադրության մեջ արմատավորելու գործում։ Ագիտատորը որոշ ժամանակ ուսումնասիրելով նախապատրաստական ցեխի բանվոր Խ. Նազարյանի նորարարական առաջարկությունները, որոնք զգալի չափով իջեցնում են արտադրանքի ինքնարժեքը, այդ առթիվ ցեխի բոլոր բանվորների, ենթավարպետների ու վարպետների համար առանձին զրույց կազմակերպեց։

Սովետական մարդիկ,— ասաց ագիտատորը,— անընդհատ որոնում և գտնում են բարձր արտադրողականությամբ աշխատելու, հետևաբար արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու նոր ձևեր ու հնարավորություններ։ Ահա այդ մարդկանցից է նորարար բանվոր Նազարյանը, որն իր նորարարական առաջարկություններով և արտադրության մեջ

այն արմատավորելով, նպաստում է արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Դուք գիտեք, որ ցեխի համար լուրջ դժվարություն էր ռեզինի մեկուսացուցիչ խառնուրդը դատարկելու պրոցեսը, որովհետև խառնուրդի որոշ մասը կպչում էր այն սարքավորմանը, որի մեջ պատրաստվում էր, իսկ վերջինիս մաքրման համար հարկավոր էր լինում կորցնել բավականին երկար ժամանակ, ծախսել թանկարժեք քիմիական նյութ, որը օգտագործվում է ավելի կարևոր նպատակների համար և մանավանդ բանվորական ուժ, որի կարիքը գործարանը միշտ զգում է։

Շնորհալի նորարարը մեկուսացուցիչ քիմիական խառնուրդ պատրաստելու նոր մեթոդ առաջարկեց, որը գործարանի գիտական խորհրդի և ղեկավարության կողմից ընդունվեց։ Այդ մեկուսացուցիչ քիմիական խառնուրդը ունի այն առավելությունը, որ նա չի կպչում սարքավորումներին, արտադրության պրոցեսում հեշտ է նրա վերամշակումը։ Այս բոլորի շնորհիվ ցեխում ամեն օր տնտեսվում է հումք, էլեկտրաէներգիա, բանվորական ուժ և միաժամանակ ստացվում է որակյալ արտադրանք։ Ինքնին հասկանալի է, որ հումքի, էլեկտրաէներգիայի խնայողությունը, բանվորական ուժի տնտեսումը և



մանավանդ արտադրանքի որակի բարձրացումը մեծ չափերով իջեցնում են արտադրանքի ինքնարժեքը։

Ձեզանից յուրաքանչյուրը,— շարունակում է ագիտատորը,— կարող է արագ կերպով արմատավորել առաջավոր փորձը և նույնիսկ նորարար դառնալ, եթե նա անընդհատ հարստացնում է իր գիտելիքները, պայքարում է իր գործի տեխնիկային լիակատար կերպով տիրապետելու, սովետական առաջավոր և հարուստ տեխնիկան լրիվ կարողությամբ օգտագործելու համար։

Գործարանում արտադրանքի ինքնարժեքի իջեցման շուրջը ագիտացիոն աշխատանքի լավագույն փորձ ունի նաև կալանդրների ցեխի ագիտատոր Ռ. Ավագյանը։ Նա հատուկ ուշադրություն է դարձնում արտադրության ներքին ռեզերվները արդյունավետ և մեքենաների արտադրական կարողությունը լրիվ օգտագործելու վրա։ Ընկ. Ավագյանը հաճախ ցեխում կատարվող ագիտացիոն զրույցի նյութ է դարձնում այն բանվորների աշխատանքի փորձը, որոնք աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերել մեքենաների տեխնիկական կարողությունը գերազանց օգտագործելու և հումքը տնտեսելու ճանա-

պարհով արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու գործում։ Այսպես, օրինակ, ագիտատոր Ավագյանը հատուկ զրույց է կազմակերպել «Հաղթանակ» տիպի մեքենայի մեքենավար Պ. Գոլոշչապովի աշխատանքի փորձի մասին և բանվորներին հանգամանորեն պատմել, թե ինչպես նա կարողացավ խնայել հումքը և պլանով նախատեսված 2,3 տոկոսի փոխարեն արտադրանքի մնացուկները իջեցնել 1,8 տոկոսի։ Աշխատանքային յուրաքանչյուր հերթափոխությունում պակասեցնելով մնացուկների քանակը, նա միայն մեկ ամսում տնտեսել է 9580 քառակուսի մետր տեքստիլ հումք։

Ագիտատոր Ավագյանը խրախուսանքի արժանի աշխատանք է կատարել նաև արտադրության ներքին ռեզերվները լիովին օգտագործելու համար սոցիալիստական մրցությունը ծավալելու գործում։ Նա հատուկ զրույց է կազմակերպել Երևանի Կիրովի անվան գործարանի բանվոր-ծառայողների հայրենասիրական նախաձեռնության մասին։

Դիմելով ունկնդիրներին նա ասաց. Այսօր կիրովցիները կոչ են արել մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություն-



ների բոլոր աշխատողներին՝ ստուգել իրենց ձեռնարկությունների ներքին ռեզերվները, վերանայել և բարելավել սարքավորման օգտագործումը, բարձրացնել գործող հաստոցների սարքավորման արտադրողականությունը, սոցիալիստական լայն մրցություն ծավալել ներքին ռեզերվներն ավելի լավ օգտագործելու, 1953 թվականի պլանները տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով, ժամկետից շուտ կատարելու համար։

Ագիտատորը համոզեցուցիչ կերպով, գործարանի կյանքից վերցրած պրակտիկ ու կոնկրետ օրինակներով ունկնդիրներին ցույց է տալիս, որ իրենք նույնպես կարող են տարեկան պլանը սահմանված նոմենկլատուրայով կատարել ժամկետից շուտ, դեկտեմբերի 20-ին և տնտեսված հումքի հաշվին տալ լրացուցիչ արտադրանք։

Մեր գործարանի կոլեկտիվը,— զրույցի ժամանակ ասում է նա,— առաջավոր բազմաթիվ աշխատողներ և ձեզանից շատերը, ինչպես օրինակ, Գոլոշչապովը, Ռոստոմյանը, Գրիգորյանը, Արտենյանը և շատերը գործնականում ցույց են տվել, որ գործարանում կան ներքին շատ ռեզերվներ, կարելի է այն հայտնաբերել, օգտագործել և այդ

միջոցով ավելացնել արտադրանքի թողարկումը, իջեցնել նրա ինքնարժեքը։

Ագիտատորի հերթական զրույցից հետո ցեխի բոլոր աշխատողները մտան սոցիալիստական մրցության մեջ՝ տարեկան պլանը բոլոր ցուցանիշներով ժամկետից շուտ կատարելու համար։

Այժմ գործարանի բոլոր ցեխերում եռանդագին աշխատանք է կատարվում ստանձնված պարտավորությունները ժամանակին կատարելու, ներքին ռեզերվները մոբիլիզացնելու և արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու համար։

Գ. ԲԱԳԴԱՅԱՆ

---

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԸ

# ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Մոնղոլական ժողովուրդը հուլիսի 11-ին տոնեց ժողովրդական ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը։ Ոգեշնչված Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայով՝ Մոնղոլիայի աշխատավորները 1921 թվականին ապստամբեցին օտարերկրյա իմպերիալիստ զավթիչների և ռեակցիոն ֆեոդալ իշխանների ճնշման դեմ։ Ազատագրական պայքարը ղեկավարում էր Սուխե-Բատորի և Չոյբալսանի կողմից ստեղծված Մոնղոլական ժողովրդական ռևոլյուցիոն պարտիան։

Բարեկամությունը Սովետական պետության հետ, նրա աջակցությունն ու օգնությունը լայն հեռանկարներ բացեցին մոնղոլական ժողովրդի առաջ՝ ազատ ու անկախ զարգացման համար։

Անցած 32 տարում Մոնղոլիայի աշխատավորները ձեռք են բերել հիանալի հաջողություններ, որոնք ակնառու կերպով ցույց են տալիս, թե որքան մեծ է երկրում հաս-

տապալված ժողովրդա-դեմոկրատական կարգի ուժն ու կենսունակությունը։ Հենվելով Սովետական Միության եղբայրական օգնության վրա, մոնղոլ ժողովուրդը ֆեոդալիզմից անցում է կատարում դեպի սոցիալիզմի պատմական ուղին, շրջանցելով զարգացման կապիտալիստական ստադիան։



Մոնղոլական Ժողովրդական ռեսպուբլիկան գտնվում է Կենտրոնական Ասիայում և ունի բավական ընդարձակ տերիտորիա՝ մեկ միլիոն 531 հազար քառակուսի կիլոմետր։ Դա ավելի է Ֆրանսիայի, Իսպանիայի, Պորտուգալիայի, Անգլիայի և Ավստրիայի տերիտորիայից՝ միասին վերցրած։

Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հարևաններն են Սովետական Միությունը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի սահմանների ընդհանուր երկարությունը կազմում է ավելի քան 7.000 կիլոմետր, որից 2.730 կիլոմետրը ձգվում է Սովետական Միության հետ ունեցած սահմանի երկարությամբ։ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում ապրում է մոտ մեկ միլիոն մարդ։ Ռեսպուբլիկայի մայրա-



քաղաքն է Ուլան-Բատորը, որը հայերեն նշանակում է՝ «Կարմիր դյուցազն»։

Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի տերիտորիան իրենից ներկայացնում է ծովի մակերևույթից միջին հաշվով 1.580 մետր բարձրության վրա գտնվող մի սարահարթ։ Առանձին լեռնագագաթների բարձրությունը հասնում է 4—4,5 հազար մետրի։

Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ընդերքը հարուստ է օգտակար հանածոներով։ Կան քարածխի, երկաթի, ոսկու, պղնձի, անագի, ինչպես նաև թանկարժեք քարերի՝ փիրուզի, բյուրեղաքարի և այլ հանքեր։

Բազմազան է Մոնղոլիայի կենդանական աշխարհը։ Այստեղ կան՝ արջեր, սկյուռներ, սամույրներ, ազնիվ եղջերուներ, իշայծյամներ, լուսաններ, գայլեր, աղվեսներ։ Տափաստաններում թափառում են անտիլոպների (այծեղջերուների) մեծ նախիրներ։ Մոնղոլիայի տափաստանների համար կրծողներից տիպիկ է արջամուկը, որի մորթու արտահանումը կարևոր տեղ է գրավում ռեսպուբլիկայի արտաքին առևտրի մեջ։ Երկրի հարավում բազմանում են Պրժևալսկու վայրի ձիեր։

Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլի-

կայի կլիման խիստ ցամաքային է, որն աչքի է ընկնում չորությամբ, ջերմության խիստ տատանումներով։ Ձմռանը մինչև 40—45 աստիճանի սառնամանիք է լինում, իսկ ամռանը՝ մինչև 30—40 աստիճանի շոգ։

***

Երկրի կոնստիտուցիայում, որն ընդունված է 1940 թվականին, ասված է. «Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան իմպերիալիստական և ֆեոդալական ճնշումը ոչնչացրած աշխատավորների (անասնապահ-արատների, բանվորների և ինտելիգենցիայի) անկախ պետություն է, որն ապահովում է երկրի զարգացումը ոչ-կապիտալիստական ուղիով՝ հետագայում սոցիալիզմին անցնելու համար»։

Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի քաղաքական հիմքն են կազմում աշխատավորների դեպուտատների խուրալները (սովետները)։ Ռեսպուբլիկայի պետական իշխանության բարձրագույն օրգանը Ժողովրդական Մեծ խուրալն է, որն ընտրվում է 3 տարվա ժամկետով։ Երկրի պետական իշխանության բարձրագույն գործադիր օրգանն է Մինիստրների Սովետը, որն ստեղծվում է Ժողովրդական Մեծ խուրալի կողմից։ Ժողովրդական Մեծ խուրալի նախագահու-



թյան նախագահն է Բոմացենդեն, իսկ պրեմյեր-մինիստրը՝ Յու. Ցեդենբալը։

Մոնղոլական ժողովուրդն իր համառ աշխատանքով վերացնում է անցյալի դառը ժառանգությունը՝ բազմադարյան հետամնացությունը։ Սովետական Միության օգնությամբ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան ետ մղեց յապոնական իմպերիալիստների հարձակումները և պաշտպանեց իր անկախությունը։ Սովետական ժողովրդի բարեկամությունն ու աջակցությունը օգնեցին Մոնղոլիայի աշխատավորներին՝ հաստատուն հիմք դնելու արդյունաբերության և երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման համար։

Ռևոլյուցիայից հետո անցած տարիների ընթացքում անասունների գլխաքանակը, որ կազմում է Մոնղոլիայի հիմնական հարստությունը, աճել է 2,5 անգամ։ Այժմ բոլոր անասունները պատկանում են աշխատավոր արատներին և պետական տնտեսություններին, այն ժամանակ, երբ ռևոլյուցիայից առաջ անասունների մեծ մասը ֆեոդալների, բուդդայական վանքերի և օտարերկրյա ֆերմաների գործակալների ձեռքում էր գտնըվում։ Արատները փաստորեն նախրապաններ էին ուրիշների համար։ Վերջին հնգամ-

յակում երկրում զգալիորեն աճել է անասունների գլխաքանակը, ընդսմին՝ արտելների արտադրական միավորումներում գլխաքանակն աճել է 6,5 անգամ։ Բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող անասունների քանակով Մոնղոլիան աշխարհում բռնում է առաջին տեղերից մեկը։

Անասնապահության հետ միասին, որը ռևոլյուցիայից առաջ փաստորեն երկրի տնտեսության միակ ճյուղն էր, զարգանում է հողագործությունը, ստեղծվել է ազգային արդյունաբերություն։

Ռեսպուբլիկայի առաջին հնգամյա պլանի (1948—1952 թվականների) կատարման հանրագումարները ցույց են տալիս, որ հնգամյակի ընթացքում արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը կազմում է համարյա 10 տոկոս։ Արդյունաբերության հետ մեկտեղ աճում է Մոնղոլիայի երիտասարդ բանվոր դասակարգը։

Նախառևոլյուցիոն Մոնղոլիայում որպես տրանսպորտ օգտագործվում էին միայն սայլեր և բարձկան անասուններ։ Բեռների փոխադրումը կատարվում էր եզներով և ուղտերով։ Այժմ Մոնղոլական ժողովրդական Ռեսպուբլիկայում լայնորեն զարգացել է ավտոտրանսպորտը, կառուցվել են երկա-



թուղիներ։ Առանձնապես մեծ նշանակություն ունի ռեսպուբլիկայի մայրաքաղաք Ուլան-Բատորը Սովետական Միության երկաթուղային մագիստրալների հետ կապող երկաթուղին, որն ունի մոտ 400 կիլոմետր երկարություն։ Օդային հաղորդակցություն է ստեղծվել Ուլան-Բատորի և Մոսկվայի ու Պեկինի միջև։ Մինչև Մոսկվա ընկած հսկայական տարածությունը ինքնաթիռներն անցնում են թռիչքային 18—20 ժամում։ Օդային հաղորդակցություն է հաստատվել նաև երկրի ներսում։

Ժամանակակից տեխնիկայով են հագեցված արդյունաբերական և տրանսպորտային ձեռնարկությունները, որոնք կառուցվել են Սովետական Միության օգնությամբ։ Մոնղոլիայի աշխատավորները տիրապետում են ամենաբազմազան պրոֆեսիաների, ուսումնասիրում և յուրացնում են սովետական ստախանովականների փորձը։ Մոնղոլական բանվորների և արատների մեջ լայնորեն զարգացած է աշխատանքային մրցությունը։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականությունը տասը տարում բարձրացել է 79 տոկոսով։

Ռևոլյուցիայից առաջ Մոնղոլիայում ամբողջ առևտուրը գտնվում էր օտարերկրյա կապիտալի ձեռքում, որը կողոպտում և ստրկացնում էր աշխատավոր արատներին: Այժմ առևտուրը կենտրոնացված է կոոպերացիայի և պետական առևտրական կազմակերպությունների ձեռքում: Սպառողական կոոպերացիան իսկական ժողովրդական, մասսայական կազմակերպություն է հանդիսանում: Նա ունի մոտ մեկ քառորդ միլիոն փայատեր:

Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունն անշեղորեն ու արագ կերպով ընդլայնվում է: Դրանում վառ կերպով արտահայտվում է մոնղոլական ժողովրդի բարեկեցության աճը: 1940 թվականից մինչև 1948 թվականը երկրում ապրանքաշրջանառությունն ավելացել է երկու անգամ: Միայն 1951 թվականին ալյուրի, ձավարի, շաքարի, թեյի, բամբակե գործվածքեղենի վաճառքն ավելացել է 20 տոկոսով: Վերջին տարիները Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունը մի քանի անգամ իջեցրել է ապրանքների գները: 1950 թվականի ապրիլին լիովին վերացվեց քարտային սիստեմը:





Երկրի արտադրողական ուժերի աճը, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացումը առաջ են բերում կուլտուրայի անշեղ վերելք:

Ռևոլյուցիայից առաջ Մոնղոլիայում գրագետների թիվը մեկ տոկոսից էլ պակաս էր, իսկ ներկայումս հասնում է 99 տոկոսի: Առաջներում երկրում կար միայն մեկ աշխարհիկ դպրոց, որտեղ սովորում էին հարուստների երեխաները: Այժմ ռեսպուբլիկայում կա 400 տարրական և միջնակարգ դպրոց: Բացի դրանից, կա 14 տեխնիկում և մի քանի բարձրագույն ուսումնական հաստատություն, այդ թվում Պետական համալսարան, որը բացվել է 1942 թվականին: Գիտությունների կոմիտեի ղեկավարությամբ զգալի գիտական աշխատանք է տարվում երկրում: 1924 թվականին Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում հրատարակվում էր միայն մեկ թերթ, իսկ այժմ հրատարակվում է 27 թերթ և 16 ժուռնալ, տպագրվում են շատ գրքեր: Մոնղոլերեն են թարգմանվել Պարտիայի պատմության համառոտ դասընթացը, Մարքսի, Էնգելսի,

Լենինի, Ստալինի մի շարք աշխատություններ, ՍՄԿՊ 19-րդ համագումարի նյութերը։

Մեծ են մոնղոլական ժողովրդի նվաճումները արվեստի զարգացման բնագավառում։ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում ստեղծվել են մի քանի թատրոն, մեծ թվով կինո-թատրոններ ու շրջիկ կինոներ, մոտ 40 ակումբ, համարյա 400 գրադարան ու ընթերցարան, երգի ու պարի անսամբլներ։

Ռևոլյուցիայից առաջ երկրում ո՛չ բժիշկ կար, ո՛չ էլ հիվանդանոց։ Հիվանդություններից և համաճարակներից շատ մարդիկ էին մահանում։ Այժմ ռեսպուբլիկայում կա մոտ 50 հիվանդանոց, մի քանի բուժկայան և բժշկական այլ հիմնարկներ։

Մոնղոլական ժողովրդի նվաճումները ցույց են տալիս, թե ինչի կարող են հասնել այն աշխատավորները, որոնք դարձել են իրենց հայրենիքի բախտի տերերը և ղեկավարվում են ամենահաղթ մարքսիստական-լենինյան ուսմունքով։ Մոնղոլական ժողովրդի համար մեծագույն նշանակություն ունեն Սովետական Միության բարեկամությունն ու եղբայրական օգնությունը։



Մոնղոլական ժողովրդա-ռևոլյուցիոն պարտիայի Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Ցեդենբալը ասում է.

«Մոնղոլական ժողովուրդը միշտ երախտագիտական զգացմունքով կհիշի, որ միայն եղբայրական բարեկամությունը սովետական ժողովրդի հետ, Սովետական Միության անշահախնդիր օգնությունը ամրապնդեցին նրա ազատությունն ու անկախությունը, ապահովեցին և ապահովում են նրա բախտավոր ու երջանիկ կյանքը»։

Ա. ՅԱԿԻՄՈՎ



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել՝*

Կ. ՄԱՐՔՍ— Վարձու աշխատանք և կապիտալ: *54 էջ, տիրաժ 7.000, գինը 80 կոպ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կարլ Մարքս: *49 էջ, տիրաժ 5.000, գինը 50 կոպ.։*

Խ. Պ. ՄԻՐԻՄԱՆՅԱՆ— Հողի սննդանյութերն ու բերքատվության բարձրացումը: *39 էջ, տիրաժ 3.000, գինը 50 կոպ.։*

ՄՈՒՐԱՑԱՆ— Երկերի ժողովածու: *4-րդ հատոր, 381 էջ, տիրաժ 10.000, գինը 7 ռ.։*

---

Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՖ 03420 Պատվեր № 640 Տիրաժ 9100*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.։*